# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



—○—

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։
Հեռախոս՝ 2—52—78։

# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Մեր Հայրենիքի կոլխոզային գյուղացիությունը, մեքենա-տրակտորային կայանների և սովխոզների աշխատողները մեծագույն ոգևորությամբ պայքարում են սոցիալիստական գյուղատնտեսության հետագա բարձրացման համար, պարտիայի և կառավարության կողմից դրված գլխավոր խնդրի՝ բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման, անասունների գլխաքանակի ավելացման ու մթերատվության զգալի աճի համար։

1951 թվականը բարձր բերքի տարի դարձնելու համար պայքարի են դուրս եկել նաև մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը, մեքենա-տրակտորային կայանների և սովխոզների աշխատողները։ Այդ պայքարն ընթանում է սոցիալիստական մրցության լայն ծավալման նշանաբանով։ Հարազատ հայրենիքին ավելի շատ կենսամթ-

թերքներ և հումք տալու համար ծավալված մրցության մեջ ընդգրկված են ոչ միայն առանձին անհատներ, օղակներ, բրիգադներ, այլև ամբողջ կոլխոզներ ու շրջաններ։ 1951 թվականը բարձր բերքի տարի դարձնելու համար եղբայրական Ադրբեջանի բամբակագործների հետ սոցիալիստական մրցության մեջ են մտել մեր ռեսպուբլիկայի բամբակագործները։

Ապրիլ ամսին տեղի ունեցած մեր ռեսպուբլիկայի առաջավոր բամբակագործների հավաքում քննության առնվեց Սովետական Ադրբեջանի բամբակագործների կոչը և սոցիալիստական մրցության պայմանագիր կնքվեց նրանց հետ։ Սոցիալիստական մրցության այդ պայմանագրով ստանձնվեցին հետևյալ հիմնական պարտավորությունները.

1951 թվականին ամբողջ ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ միջին հաշվով առնվազն 25 ցենտներ բամբակի հումք։ Պետությանը հանձնել ընտիր և առաջին տեսակի բամբակի հումք՝ ամբողջ բերքի առնվազն 85 տոկոսի չափով։ Բամբակացան շրջանների ռռոգելի հողերում ապահովել աշնանացան ցորենի առնվազն 22—23 ցենտներ բերք յուրաքանչյուր հեկտարից։ Պետությանը հացահատիկ հանձ-



նելու պլանը կատարել մինչև սեպտեմբերի 1-ը։

Խաղողի միջին բերքատվությունը հասցնել յուրաքանչյուր հեկտարից մինչև 50 ցենտների, իսկ բանջարեղենի բերքատվությունը՝ մինչև 180—200 ցենտների։ Շերամապահության բնագավառում ամեն մի տուփ գրենայից ստանալ միջին հաշվով առնվազն 65 կիլոգրամ բոժոժ։

Անասնաբուծության բնագավառում 1951 թվականին կատարել ու գերակատարել գլխաքանակի ավելացման պլանը։ Յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանալ առնվազն 1.100 լիտր կաթ և մեկ ոչխարից՝ առնվազն 2,2 կիլոգրամ բուրդ։ Մինչև 1951 թվականի նոյեմբերի 1-ը լրիվ ավարտել անասնաբուծական արտադրանքի հանձնումը պետությանը՝ մթերումների բոլոր տեսակներով։

Հավաքն իր ընդունած պարտավորությունների մեջ նշեց ագրոտեխնիկական բոլոր այն միջոցառումները, որոնք անհրաժեշտ է կատարել բարձր բերքի ստացումն ապահովելու համար։

Առաջավոր բամբակագործների ռեսպուբլիկական հավաքից անցել է մեկ և կես ամիս։ Այդ ժամանակվա ընթացքում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ֆրոնտի աշխա-

տողները հաջողությամբ կատարեցին եղբայրական Ադրբեջանի բամբակագործների հետ կնքած սոցիալիստական մրցության պայմանագրի մի շարք կետեր—բամբակի ցանքն ավարտվեց անցյալ տարվանից 10 օրով շուտ, հաջողությամբ է ընթանում բամբակենու մշակությունը և այլն։ Բայց պայքարը բարձր բերքի համար դեռ չի ավարտվել. այն ավելի պետք է ուժեղացնել այժմ, ցանքերի մշակության այս եռուն շրջանում։ Այն բանից, թե ինչպես կմշակվեն բամբակի, հացահատիկի, տեխնիկական կուլտուրաների ցանքերը, այգիներն ու բանջարանոցները՝ կախված է սոցիալիստական մրցությամբ ընդունած պարտավորությունների կատարումը, կախված է բարձր բերքի ստացումը։

Որո՞նք են ագիտատորների անելիքները եղբայրական Ադրբեջանի բամբակագործների հետ կնքած սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ասպարեզում ներկա էտապում։

Ագիտատորները կոլխոզնիկներին, մեքենա-տրակտորային կայանների և սովխոզների աշխատողներին նորից ու նորից պետք է պարզաբանեն սոցիալիստական մրցության պայմանագրում նշված այն բոլոր ագրոձեռնարկումները, որոնք անհրաժեշտ է կիրա-



ռել ցանքերի մշակության շրջանում, այն է՝ քաղհան, կուլտիվացիա, պարարտացում, ոռոգում, սնուցում, բուժում և այլն։ Ագիտատորներն իրենք պետք է շատ լավ գիտենան ագրոտեխնիկական այդ ձեռնարկումներից յուրաքանչյուրի կիրառման ժամկետներն ու ձևերը և հետևեն այդ ժամկետների ու կանոնների ճշգրիտ պաշտպանմանը։ Եթե ագիտատորին հանձնարարված օղակը, բրիգադը ժամանակին չեն կիրառում, կամ անորակ են կատարում որևէ ագրոձեռնարկում, ապա ագիտատորը պետք է ժամանակին ահազանգի, այդ առթիվ հատուկ զրույց կազմակերպի իր ունկնդիրների հետ և հասնի այն բանին, որպեսզի նկատված թերությունները անհապաղ վերացվեն։ Իսկ դրան ագիտատորը կարող է հասնել միայն այն դեպքում, եթե սերտորեն կապված լինի իրեն հանձնարարված օղակի կամ բրիգադի հետ, եթե ագիտացիոն-քաղաքական աշխատանքը ամբողջովին կատարի դաշտում, այնտեղ, ուր վճռվում է բարձր բերքի բախտը։

Բարձր բերք աճեցնելու համար առաջնակարգ նշանակություն ունի գյուղատնտեսության առաջավորների փորձի ամենալայն մասսայականացումն ու արմատավորումը։ Ագիտատորներն այդ կարևոր գործի առա-

ջամարտիկները պետք է լինեն։ Յուրաքանչյուր շրջանում, յուրաքանչյուր կոլխոզում կան բարձր բերքի անվանի վարպետներ։ Ագիտկոլեկտիվներն իրենց նիստերում, սեմինար պարապմունքներում միշտ էլ հնարավորություն ունեն լսելու բարձր բերքի այդ վարպետներին, ուսումնասիրել նրանց փորձը և ապա այն դարձնել յուրաքանչյուր կոլխոզնիկի, ՄՏ կայանի ու սովխոզի աշխատողի սեփականություն, անձամբ միջամտել, որպեսզի իրենց մոտ կիրառվեն աշխատանքի առաջավոր մեթոդները։ Գյուղատնտեսության առաջավորների փորձը տարածելու համար ագիտատորները լայնորեն պետք է օգտվեն պարբերական մամուլից, մշտապես իրենց ձեռքի տակ ունենան բարձր բերքի վարպետների աշխատանքի մեթոդները լուսաբանող բրոշյուրները, ինչպես նաև ցուցադրական անհրաժեշտ նյութեր։

Այս տեսակետից ուսանելի աշխատանք է կատարում, օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Գետաշեն գյուղի «Լենուղի» կոլխոզի ագիտկոլեկտիվը։ Գյուղատնտեսության առաջավորների փորձի ուսումնասիրությունն ու մասսայականացումը դարձել է ագիտկոլեկտիվի աշխատանքի մեթոդը։ Այստեղ ագիտատորները ոչ միայն մասսայականացնում



են իրենց կոլխոզի բարձր բերքի վարպետների աշխատանքային մեթոդները, այլև Ադրբեջանի բամբակագործների, իրենց կոլխոզի հետ մրցող Ադրբեջանական ՍՍՌ Աղստաֆայի շրջանի Լենինի անվան կոլխոզի առաջավորների փորձը։

Սոցիալիստական մրցության հաջող կազմակերպման անհրաժեշտ նախապայման է հանդիսանում ստանձնած պարտավորությունների կատարման սիստեմատիկ ստուգումը։ Ցանքերի, հատկապես բամբակի և տեխնիկական մյուս կուլտուրաների մշակման ընթացքում ագիտատորները շաբաթական կամ տասնօրյակում մեկ անգամ պետք է ստուգեն իրենց ամրացված օղակների, բրիգադների վերցրած պարտավորությունների կատարման ընթացքը և այդ մասին խոսեն իրենց զրույցների ժամանակ, հրապարակեն «Իլյիչովկա»-ներում, գրեն հատուկ ցուցատախտակների վրա։

Ագիտատորները մշտապես պետք է հիշեն, որ 1951 թվականի բարձր բերքի համար մղվող պայքարը ավարտված կարելի է համարել միայն այն ժամանակ, երբ այդ բերքը կհավաքվի և կլցվի շտեմարանները։ Ուրեմն բարձր բերք ստանալու համար ագիտացիոն-քաղաքական աշխատանքը պետք է

տարվի ամեն օր, նպատակասլաց կերպով, գյուղատնտեսական աշխատանքների յուրաքանչյուր էտապում նա պետք է ծառայի օրվա հարցերի հաջող լուծման շահերին։

Հայրենասիրական ջերմ զգացումներով լի եղբայրական երկու ռեսպուբլիկաների՝ Սովետական Ադրբեջանի և Սովետական Հայաստանի գյուղատնտեսության ֆրոնտի աշխատավորները դուրս են եկել սոցիալիստական մրցության՝ 1951 թվականը բարձր բերքի տարի դարձնելու համար։ Մեր ռեսպուբլիկայի գյուղական ագիտատորների առաջնակարգ խնդիրն է՝ ամբողջ ուժերով օգնել կոլխոզային և սովխոզային դաշտերի աշխատավորներին՝ պատվով դուրս գալու այդ մրցությունից։



ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԵԾ ԿԱՌՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Երևանի «Ավտոդետալ» գործարանը ռեսպուբլիկայի արդյունաբերական այն ձեռնարկություններից է, որոնք կատարում են կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները։ Յուրաքանչյուր նոր պատվեր, որ տրվում է գործարանին, անսահման ցնծությամբ է ընդունվում կոլեկտիվի կողմից։ Ոգևորված ստալինյան հոյակապ նախագծումներով, գործարանի յուրաքանչյուր աշխատող ձգտում է ավելի լավ աշխատել, ժամկետից շուտ և բարձր որակով կատարել կոմունիզմի կառուցումների պատվերները։

Մեր գործարանը մի քանի օր առաջ կատարեց Ստալինգրադյան հիդրոհանգույցի բոլոր պատվերները՝ նրա շինարարներին ուղարկելով ավելի քան 4 վագոն զանազան տեսակի ավտոդետալներ։ Գործարանի կոլեկտիվը երկրորդ եռամսյակի համար նախատեսված դետալները նորակառույցներին ուղարկեց

ժամկետից երկու ամիս շուտ, և երրորդ եռամսյակի հաշվին արդեն ուղարկել է ավելի քան 3.000 դետալ։

Ինչպե՞ս եմ ես, որպես ագիտատոր, օգնում բանվորներին՝ կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու գործում։ Առաջին հայացքից կարող է թվալ, որ գործարանի կոլեկտիվում տիրող աշխատանքային այդպիսի բարձր խանդավառության պայմաններում, երբ յուրաքանչյուր բանվոր ձգտում է այդ վեհ գործի համար գործադրել իր բոլոր ուժերն ու եռանդը, ագիտատորին համարյա ոչինչ չի մնում անելու։ Բայց այդ սխալ է, իհարկե։ Ագիտատորը միշտ էլ շատ անելիքներ ունի, նամանավանդ այնպիսի գործարանում, ինչպիսին մերն է, ուր բանվորների մեծագույն մասը երիտասարդներ են և որի կոլեկտիվը անընդհատ համալրվում է նորեկ, անփորձ երիտասարդներով։

Գործարանի № 1 մեխանիկական ցեխում, ուր ես աշխատում եմ որպես ագիտատոր, համարյա բոլոր բանվորները երիտասարդներ են։ Երբ գործարանի կոլեկտիվի ընդհանուր ժողովում քննության էր առնվում կոմունիզմի մեծ կառուցումների պատվերների կա-



տարման հարցը, մեր ցեխի բանվորներից շատերը պարտավորություն ստանձնեցին իրենց առաջադրանքները կատարել 200—300 տոկոսով և տալ միայն բարձրորակ արտադրանք։

Կոլեկտիվի ընդհանուր ժողովից հետո իմ ունկնդիրների հետ ես զրույց անցկացրի կոմունիզմի նորակառույցների մասին և հարցրի, թե ինչո՞վ կարող եմ օգնել նրանց՝ վերցրած պարտավորությունները կատարելու գործում։ Բանվորներից յուրաքանչյուրն առաջադրեց իր պահանջները. դրանք վերաբերվում էին ինչպես աշխատանքի կազմակերպմանը, այնպես և արտադրության տեխնոլոգիային։ Ես հաշվի առա այդ բոլոր առաջարկությունները և դրանց մասին խոսեցի ցեխի վարպետ ընկ. Մարտիրոսյանի հետ, որը խոստացավ բավարարել բանվորների բոլոր պահանջները։

Երիտասարդ բանվոր Սերյոժա Հովհաննիսյանը, օրինակ, այսպիսի պահանջ դրեց՝ ինքը օրական երեք նորմա կկատարի, եթե գործիքային ցեխը ժամանակին իրեն ապահովի ջլոնկաներով։ Ես եղա գործիքային ցեխում, խոսեցի նրա պետի հետ և հայտնեցի Սերյոժայի պահանջի մասին։ Ցեխի պետը խոստա-

ցավ, որ իրենք ժամանակին կհասցնեն պահանջված քանակությամբ շպոնկաներ։ Եվ իրոք, Սերյոժան, ժամանակին ստանալով այն, սկսեց օրական երեք, երբեմն նույնիսկ չորս նորմա կատարել։

Ահա նաև մեկ ուրիշ օրինակ։

Ցեխի երկու երիտասարդ բանվորներ՝ Ս. Ջմբոյանը և Վ. Մուշեղյանը իրենց պլանները սիստեմատիկ կերպով թերակատարում էին։ Կոմունիզմի նորակառույցների պատվերները կատարելու վերաբերյալ իմ անցկացրած զրույցի ժամանակ բանվորներից մի քանիսը նրանց կշտամբեցին հետ մնալու համար, ասելով, որ ցեխում պլանները թերակատարող մարդ չպետք է լինի։

Ես տեսա, որ այդ շատ խոր կերպով ազդեց երկու երիտասարդ բանվորների վրա. նրանք ամբողջ սրտով ձգտում էին հետ չմնալ ընկերներից։ Մուշեղյանի և Ջմբոյանի հետ առանձին զրույց անելուց հետո, ես նրանց տարա նույն դետալը պատրաստող խառատ Թ. Սարյանի դազգահի մոտ, որպեսզի տեսնեն թե նա ինչպես է աշխատում։ Լավագույն խառատի օգնությամբ Մուշեղյանը և Ջմբոյանը աստիճանաբար սկսեցին ավելի շատ արտադրանք տալ։ Այժմ նրանք



երկուսն էլ իրենց պլանները կատարում են 150—170 տոկոսով։

Այժմ կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները կատարող մեր՝ № 1 մեխանիկական ցեխում բոլոր բանվորներն անխտիր իրենց պլանները կատարում և գերակատարում են, տալով բարձրորակ արտադրանք։

Բ. ԲԱԼԱՍԱՆՅԱՆ

(Երևանի «Ավտոդետալ» գործարանի ագիտատոր)

—Ω—

# ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ

*Այն լուրը, որ մեր ռեսպուբլիկայի առաջավոր բամբակագործների հավաքը ընդունել է Սովետական Ադրբեջանի բամբակագործների՝ 1951 թվականին բարձր բերք աճեցնելու համար սոցիալիստական մրցություն սկսելու հրավերը, մեր, Հոկտեմբերյանի շրջանի Գետաշեն գյուղի կոլխոզնիկների մեջ աշխատանքային բարձր խանդավառություն առաջ բերեց։*

*Մեր կոլխոզի ընդհանուր ժողովում քննության առնվեցին Ադրբեջանական ՍՍՌ-ի հետ կնքած սոցիալիստական մրցությամբ ռեսպուբլիկայի առաջավոր բամբակագործների կողմից ընդունած պարտավորությունները։ Կոլխոզնիկները միահամուռ կերպով հավանություն տվեցին այդ պարտավորություններին և որոշեցին՝ ոչ մի ջանք չխնայել 1951 թվականը բարձր բերքի տարի դարձնելու, սո-*



*ցիալիստական մրցությունից պատվով դուրս գալու համար։ Միաժամանակ կոլխոզի ընդհանուր ժողովը որոշեց բարձր բերք աճեցնելու համար սոցիալիստական մրցության մեջ մտնել Ադրբեջանական ՍՍՌ-ի Աղստաֆայի շրջանի Կիրով գյուղի Լենինի անվան կոլխոզի հետ։*

*Մեր կոլխոզը ստանձնեց այսպիսի պարտավորություններ. յուրաքանչյուր հեկտարից ստանալ 35 ցենտներ բամբակ և ամբողջ հումքի 90 տոկոսը հանձնել առաջին տեսակի, 28 ցենտներ հացահատիկ, 70 ցենտներ խաղող, 200 ցենտներ բանջարեղեն, 80 ցենտներ առվույտ։*

*Սրանք զգալի չափով բարձր են այն պարտավորություններից, որոնք ամբողջ ռեսպուբլիկայի համար ստանձնել է առաջավոր բամբակագործների հավաքը։*

*Աղստաֆայի շրջանի Վ. Ի. Լենինի անվան կոլխոզի հետ սոցիալիստական մրցության պայմանագիր կնքելուց հետո կոլխոզի պարտիական կազմակերպությունը ագիտկոլեկտիվի առաջ խնդիր դրեց՝ յուրաքանչյուր կոլխոզնիկի սեփականությունը դարձնել վերցրած*

պարտավորությունները, ավելի բարձրացնել նրանց աշխատանքային խանդավառությունը, օգնել օղակներին, բրիգադներին վերցրած պարտավորությունները կատարելու, ագրոտեխնիկական բոլոր ձեռնարկումները ժամկետին կիրառելու գործում։

Մեր ագիտկոլեկտիվը բաղկացած է 28 ագիտատորներից։ Դրանք մեծ մասամբ կոլխոզային արտադրության առաջավորներ են, բարձր բերքի վարպետներ, ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձի տեր մարդիկ։ Մենք ագիտկոլեկտիվի ուժերը դասավորեցինք այնպես, որ յուրաքանչյուր օղակ ունենա ագիտատոր և ագիտացիոն-մասսայական ամբողջ աշխատանքը կատարվի դաշտում։ Այա ագիտկոլեկտիվի նիստում որոշեցինք օգնել կոլխոզնիկներին կնքելու ինչպես անհատական, այնպես էլ օղակային սոցմրցման պայմանագրեր, հատուկ ցուցատախտակների վրա գրել օղակների վերցրած պարտավորությունները և սիստեմատիկաբար ստուգել ու հրապարակել նրանց կատարման ընթացքը, սիստեմատի-



կաբար լույս ընծայել «Բլյիշովկա»-ներ, լայնորեն մասսայականացնել բարձր բերքի առաջավորների աշխատանքի փորձը և այլն։

Ցույց տալու համար, թե ինչպես են մեր ագիտատորները ագիտացիոն-բացատրական աշխատանքի շատ ձևերով օգնում կոլխոզնիկներին բարձր բերքի աճեցման գործում, կարելի է բերել բազմաթիվ օրինակներ։ Վերցնենք օրինակ, առաջավորների փորձի փոխանակման մեթոդը, որը ինչպես փորձն է ցույց տալիս, բերքատվության անշեղ բարձրացման համար ագիտացիա անելու ամենահաջող մեթոդն է։

Մեր կոլխոզի ագիտատորներից է բամբակի բարձր բերքի անվանի վարպետ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վիկտորիա Ալոյանը, որը մասնակցել առաջավոր բամբակագործների ռեսպուբլիկական հավաքին, և մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավորների դելեգացիայի կազմում մեկնել Ադրբեջան՝ այնտեղի բամբակագործների փորձին ծանոթանալու։

Մեր ագիտկոլեկտիվի նիստում լսեցինք ընկեր Ալոյանի զեկուցումը, որը պատմել Ադրբեջանի առաջավոր բամբակագործ-

ների աշխատանքի փորձի մասին, որոնցից մեր կոլխոզնիկները շատ բան ունեն սովորելու։ Մեզ բոլորիս մեծ զարմանք պատճառեց, երբ ընկեր Ալոյանը ասաց, որ ադրբեջանցի ընկերները բամբակի դաշտերի փխրեցումը կատարում են մոտ երկու անգամ ավելի խորը, այն է՝ 10—12 սանտիմետր, քան մենք, և որ դրան նրանք հասնում են միայն այն բանի հետևանքով, որ նրանց բահերը (քեթմենները) ավելի երկար են, քան մերը։

Վիկտորիա Ալոյանը զեկուցում տվեց նաև կոլխոզնիկների համար, որոնց մեջ մեծ ոգևորություն առաջացրեցին Ադրբեջանի բամբակացան կոլխոզնիկների լավագույն աշխատանքի մասին նրա պատմածները։

Ագիտկոլեկտիվի հանձնարարությամբ ագիտատորները սկսեցին կոլխոզնիկներին օգնել՝ ադրբեջանցի ընկերների աշխատանքի լավագույն փորձն օգտագործելու գործում։ Խոր փխրեցումը մեծ չափով կօգնի բերքատվության բարձրացմանը։

Իրենց հերթին Աղստաֆայի շրջանի Լենինի անվան կոլխոզի կոլխոզնիկներն ընդօրինակեցին մեր կոլխոզի անդամ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վ. Ալոյանի աշխա-



տանքի մեթոդները, այն է՝ սկսեցին բամբակենու ծերատման ժամանակ հեռացնել նաև այն բոլոր փոքրիկ ճյուղավորումները, որոնք որոշ ժամանակից հետո պետք է մեծանան և արգելակեն բամբակենու հզոր աճին։ Անցյալ տարիների փորձը ցույց է տվել, որ այդպիսի ծերատումը մեծ չափով նպաստում է բերքատվության բարձրացմանը։

Ահա նաև մեկ ուրիշ օրինակ։

Մեր ագիտկոլեկտիվի անդամ, բամբակագործական բրիգադայի բրիգադիր ընկ. Ռ. Անտոնյանը վերջերս արեց այսպիսի առաջարկություն՝ քիմիական պարարտանյութը ցցել ոչ թե ակոսի կենտրոնը, ինչպես կատարվում է մինչև այժմ, այլ բույսի արմատի մոտ, երկու կողմից։ Անտոնյանի այս առաջարկությունը արժանացավ մասնագետների և MS կայանի աշխատողների հավանությանը։ Մեր ագիտատորները այդ նորարարական առաջարկության մասին պատմեցին կոլխոզնիկներին և այժմ այն մեր կոլխոզում ամենուրեք կիրառվում է։ Պարարտացման այդ ձևի շնորհիվ բույսը շատ ավելի սնունդ կստանա, քան երբ պարարտանյութը գցվում է նրանից հեռու։

Մի քանի օր առաջ մեր ագիտկոլեկտիվի նիստում հանրագումարի բերեցինք սոցիալիստական մրցումով մեր կոլխոզի վերցրած պարտավորությունների կատարման ընթացքը։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ մեր կոլխոզնիկները ժամանակին և բարձր որակով են կատարում ցանքերի մշակության բոլոր ագրոձեռնարկումները. արդեն կատարված է բամբակենու երկրորդ մշակությունը, երկրորդ կուլտիվացիան և նոսրացումը, տրված է առաջին ջուրը և առաջին սնուցումը։

Կոլխոզի այս լավ աշխատանքում իրենց բաժինն ունեն նաև մեր ագիտատորները։

Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ

(Հոկտեմբերյանի շրջանի Գետաշեն գյուղի կոլխոզի ագիտկոլեկտիվի ղեկավար)

—o—



## ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԵԾ ԿԱՌՈՒՅՑՈՒՄՆԵՐԸ

Սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել հսկայական կառուցումների աշխատանքին Վոլգա, Ամու-Դարյա և Դնեպր գետերի վրա։ Այդ վիթխարի հիդրոէլեկտրակայանները, նավարկելի և ոռոգիչ ջրանցքներն ստեղծվում են մեր ժողովրդի հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի նախաձեռնությամբ։ Դրանք մեր երկրում կոմունիզմի կառուցման վիթխարի խնդրի լուծման կարևորագույն օղակն են հանդիսանում։ Սովետական ժողովուրդն այդ կառուցումները անվանել է կոմունիզմի կառուցումներ։

Սովետական մարդիկ կարճ ժամանակամիջոցում, 5—7 տարում, կստեղծեն հզոր հիդրոէլեկտրակայաններ, որոնք կարտադրեն տարեկան ավելի քան 22 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Միասնական ջրա-տրանսպորտային սիստեմով, որն իրար կմիացնի Բալթիկ, Սպիտակ, Սև, Ազովի, Կասպից ու Արալյան ծովերը և Վոլգա, Դոն, Դնեպր, Ամու-Դարյա

գետերը, կստեղծվի նոր ոռոգիչ-ջրարբի սիստեմ՝ ավելի քան 28 միլիոն հեկտար տարածության վրա։

Նոր էլեկտրակայանների էներգիան խոշոր չափով կավելացնի մեր երկրի արտադրողական ուժերը։ Հայտնի է, օրինակ, որ մեկ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիան բավական է կատարելու հետևյալ աշխատանքներից որևէ մեկը. փորել և հանքահորից գետնի երես դուրս բերել 75 կիլոգրամ ածուխ, գլանել 50 կիլոգրամ մետաղ, պատրաստել 2 զույգ կոշիկ, գործել 10 մետր բամբակյա գործվածք, եփել և ձևավորել 42 կիլոգրամ շաքար։ Այստեղից հասկանալի է, թե որպիսի վիթխարի նշանակություն է ունենալու մեր Հայրենիքի տնտեսական հզորության հետագա վերելքի և սովետական ժողովրդի բարեկեցության աճման համար էլեկտրաէներգիայի արտադրության ավելացումը՝ տարեկան ավելի քան 22 միլիարդ կիլովատ-ժամով։

Նույնպիսի մեծ նշանակություն է ունենալու 28 միլիոն հեկտար հողերի ոռոգումն ու ջրովի դարձնելը։ Հողային այդ տարածությունը հավասար է Ավստրիայի, Փորթուգալիայի, Բելգիայի, Հոլլանդիայի և Դանիայի տերիտորիաներին՝ միասին վերցրած։ Պետք



է նշել, որ հարյուր տարվա ընթացքում Ամերիկայի Միացյալ Նահանգներում ոռոգվել և ջրովի դարձվել է միայն 8 միլիոն հեկտար տարածություն։ Սովետական մարդիկ առաջիկա մի քանի տարում Վոլգայի, Ամու-Դարիայի, Դնեպրի և Դոնի ջրերով կոռոգեն և ջրովի կդարձնեն մի տարածություն, որը երեք և կես անգամ մեծ կլինի այն տարածությունից, որ Ամերիկայում ջրովի է դարձվել հարյուր տարվա ընթացքում։

Միայն սովետական սոցիալիստական հասարակարգին է հատուկ, իր արտադրողական ուժերի բարձր մակարդակով, առաջավոր տեխնիկայով ու գիտությամբ հանդերձ, միաժամանակ իրագործելու մի շարք այնպիսի վիթխարի հիդրոտեխնիկական կառուցվածքներ, որոնց նմանը չի եղել մարդկության ամբողջ պատմության ընթացքում։

Դրանում իր նոր արտահայտությունն է գտնում սոցիալիզմի գերազանցությունը կապիտալիզմի հանդեպ։ Բուրժուական հասարակակարգը անզոր եղավ դնելու և լուծելու բնության վերափոխման խնդիրները։ Միայն սովետական ժողովրդի՝ կոմունիզմ կառուցող ժողովրդի ուժերը կարող են ներել պլանավորելու, վիթխարի տարածությունների վրա կարճ ժամանակամիջոցում իրագործելու

այնպիսի փոփոխություններ, որոնք կարելի է
համեմատել երկրի կեղևի տեսքը փոխող
երկրաբանական տեղաշարժերի հետ։
Սովետական պետությունը միշտ էլ, իր
գոյության առաջին տարիներից ի վեր, մեծ
ուշադրություն է նվիրել երաշտի դեմ մղվ-
վող պայքարին, ոռոգիչ ջրանցքների կա-
ռուցմանը։
Սովետական իշխանության տարիներին
խոշոր ոռոգիչ ջրանցքներ ստեղծվեցին Ուզ-
բեկստանում, Ղազախստանում, Տաջիկստա-
նում, Ադրբեջանում, Հայաստանում, Պովոլ-
ժյեյում, Թերեք գետի շրջանում, Հարավային
Սիբիրում։ 1939 թվականին Ուզբեկստանում
ժողովրդական կառուցման մեթոդով ստեղծ-
վեց Ֆերգանայի Ստալինի անվան մեծ ջր-
րանցքը՝ 350 կիլոմետր երկարությամբ։
Փաստորեն դա չափազանց կարճ ժամանա-
կամիջոցում ստեղծված մի մեծ գետ է, որ
ոռոգում է հսկայական տարածությամբ ար-
գավանդ, առաջներում պապակ հողեր։
Լայն մասշտաբներով մեր երկրում անց-
կացվում է ագրոտեխնիկական միջոցառում-
ների սիստեմ, որը կանխում է երաշտը։
Մտցվում են ճիշտ ցանքաշրջանառություն-
ներ։ Ժամանակակից մեքենաների օգնու-
թյամբ ստեղծվում է հերկի խոր հողաշերտ։



կատարվում է ձնկալում, ոչնչացվում են մո-
լախոտերը, լայնորեն օգտագործվում են
պարարտանյութեր, կատարվում են դաշտա-
պաշտպան անտառատնկումներ։
Պարտիայի և կառավարության ձեռք ա-
ռած միջոցառումների շնորհիվ Սովետական
երկրում երաշտները հազվադեպ են կրկնվում
և նրանց կործանարար ազդեցությունը թու-
լանում է։ 1946 թվականի ծանր երաշտի
ազդեցությունն զգալի չափով թուլացվեց.
կոլխոզները սոցիալիստական պետության
օգնությամբ արագորեն վերացրին այդ երաշ-
տի հետևանքները, մի երաշտ, որ կապիտա-
լիստական պետության պայմաններում ան-
չափ մեծ աղետ կդառնար։
ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՀամԿ(բ)Պ
Կենտրոնական Կոմիտեն 1948 թվականի աշ-
նանը պատմական որոշում ընդունեցին
ՍՍՌՄ Եվրոպական մասի տափաստանային
և անտառատափաստանային շրջանների բը-
նական պայմանների վերափոխման պլանի
մասին, որպիսի պլանը նկատի է առնված
15 տարվա համար։ Ստալինյան այդ պլանը
նախատեսում է կիրառել խոտադաշտային
ցանքաշրջանառություններ, ՍՍՌՄ Եվրոպա-
կան մասի տերիտորիայում ստեղծել պետա-
կան անտառաշերտերի վիթխարի սիստեմ՝

պատնեշ խորշակների դեմ, տասնյակ հազարավոր լճակներ ու ջրամբարներ կառուցել հողերի ոռոգման համար, կոլխոզների և սովխոզների դաշտերում ստեղծել դաշտապաշտպան անտառաշերտերի համատարած ցանց։

Սոցիալիստական գյուղատնտեսության աշխատավորները ամենուրեք գերակատարում են նշված պլանները՝ թե ըստ ժամկետների և թե ըստ ծավալի։ Երկու տարում անտառ է տնկվել 1 միլիոն 350 հազար հեկտարի վրա։

Սովետական մարդիկ իրենց Հայրենիքի համար հպարտության զգացմունքով ընդունեցին կառավարության որոշումները՝ նոր վիթխարի հիդրոէլեկտրակայաններ, ջրանցքներ, ոռոգիչ և ջրարբի սիստեմներ ստեղծելու մասին։ Սովետական ժողովուրդը խանդավառությամբ ձեռնամուխ եղավ այդ հոյակապ կառուցումների իրագործմանը։

## ԵՐԿՈՒ ԳԻԳԱՆՏ ՎՈԼԳԱՅԻ ՎՐԱ

Ռուսական Վոլգա մեծ գետի վրա, նրա միջին հոսանքի շրջանում, ստեղծվում են երկու գիգանտ հիդրոէլեկտրակայաններ՝ Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանները։ Իրենց կարողությամբ և արտադրվող էլեկտրաէներգիայի քանակով



այդ հիդրոէլեկտրակայաններից յուրաքանչյուրը գերազանցելու է աշխարհի ամենամեծ էլեկտրակայաններին, այդ թվում և ամերիկյան լայնորեն թմբկահարված Բոուլդեր-Դեմ և Գրենդ-Կուլի կայաններին։

Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը, մոտ 2 միլիոն կիլովատ կարողությամբ, տարեկան արտադրելու է մոտ 10 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Դա մի քանի անգամ ավելի է Դնեպրոգէսի՝ Եվրոպայի այդ ամենախոշոր էլեկտրակայանի արտադրանքից։ Կույբիշևի էլեկտրակայանը ավելի քան վեց միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա է մատակարարելու Մոսկվային՝ ավելի քան 800 կիլոմետր ձգվող բարձրավոլտ հաղորդման գծերի միջոցով։ Էլեկտրաէներգիայի հաղորդման այս հեռավորությունը ռեկորդային է։ Ամերիկյան պրակտիկային անծանոթ է էլեկտրաէներգիայի հաղորդումը 430 կիլոմետրից ավելի տարածության վրա։ Կույբիշևյան էլեկտրակայանի էներգիան լայնորեն օգտագործվելու է Միջին Վերձվոլգյան շրջանների գյուղատնտեսության մեջ։ Կույբիշևյան էլեկտրակայանի էներգիայի օգնությամբ Վոլգայի ջրերով Անդրվոլգյան շրջանում ոռոգվելու է մեկ միլիոն հեկտար անջրդի հող։

Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանը կտա նույնքան էներգիա, ինչքան և Կույբիշևյանը, այսինքն՝ տարեկան մոտ 10 միլիարդ կիլովատ-ժամ։ Դրանից 4 միլիարդ կիլովատ-ժամը մատակարարվելու է Մոսկվային, երկու միլիարդ կիլովատ-ժամն օգտագործվելու է ոռոգման նպատակներով։

Վոլգայի երկու հիդրոէլեկտրակայանների կողմից Մոսկվային տարեկան 10 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա մատակարարելը՝ Մոսկվայի էներգետիկ սիստեմը կդարձնի ամենահզորը ամբողջ աշխարհում։

Ստալինգրադի վիթխարի ջրամբարը ջուր կմատակարարի Մերձկասպյան շրջանների տափաստանային և կիսատափաստանային հողերի ոռոգման համար։ Ջրանցքները խոնավություն կտան այն հողերին, որոնք ընկած են Վոլգա և Ուրալ գետերի միջև, Սարպինսկի դաշտավայրում, Սև հողերին և Նոգայսկի տափաստանին։ Ընդհանուր առմամբ այդ վայրերում ջրովի կդարձվի և կոռոգվի մոտ 13 միլիոն հեկտար հող։ Ոռոգվող հողերը կօգտագործվեն բամբակ, ցորեն, բրինձ և բանջարանոցային կուլտուրաներ ցանելու համար։ Այդ շրջանը կդառնա մեր երկրի ամենահարուստ շտեմարաններից մեկը։ Մերձկասպիայի ընդարձակ արոտավայ-



րերը կստանան հոսող մաքուր ջուր, որը բացառիկ նպաստավոր պայմաններ կստեղծի անասնաբուծության զարգացման համար։

Շուտով այստեղ կբարձրանան պետական անտառային պաշտպանության շերտեր, խոշոր ջրանցքների, կոլխոզների և սովխոզների դաշտերի եզրերին տնկված անտառատունկեր։ Մերձկասպյան ավազուտները կամրացվեն, կանտառապատվեն։ Սովետական ժողովրդի կամքով առաջիկա տարիներին Մերձկասպյան շրջանները կդառնան ծաղկող երկրամաս՝ իրենց էլեկտրիֆիկացված ջրովի հողագործությամբ և բարձր մթերատու անասնաբուծությամբ։

Կույբիշևյան և Ստալինգրադյան ամբարտակները շահագործման հանձնելուց հետո կբարձրանա Վոլգայի ջրերի մակարդակը։ Բավականաչափ կբարելավվեն գետի նավարկության պայմանները։

## ՎՈԼԳԱ–ԴՈՆ

Ստալինգրադի մոտ շինարարական եռուզեռ է տիրում մեր ժամանակի ևս մի հոյակապ կառուցումներից մեկում՝ Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի շինարարությունում։

Ռուս մարդիկ սերնդեց-սերունդ երազում

էին Վոլգան ջրանցքով միացնել Դոնի հետ։ Այժմ իրականանում է այդ երազը։ Ջրանցքի կառուցումն սկսվել էր դեռ պատերազմից առաջ։ Թշնամու ներխուժումն ընդհատեց այդ աշխատանքը։ 1948 թվականին վերսկսվեց Վոլգա-Դոն ջրային ճանապարհի շինարարությունը։ Կառավարությունը ժամկետ սահմանեց աշխատանքներն ավարտելու 1953 թվականին։ Երկիրը շինարարներին ապահովում էր ամենաառաջավոր տեխնիկայով՝ հզոր էքսկավատորներով, հողակլանիչներով, ավտոմատացված բետոնի գործարաններով և այլն։

Այստեղ, օրինակ, աշխատանքի մեջ կարելի է տեսնել քայլող էքսկավատոր՝ սովետական կոնստրուկտորական մտքի և մեքենաշինական տեխնիկայի հրաշքը։ Այդ գիգանտի շերեփի մեջ, որը միանգամից վերցնում է մինչև 14 խորանարդ մետր գրունտ, կարող է տեղավորվել մի ամբողջ ավտոմեքենա։ Շինարարության մեջ օգտագործվող հողակլանիչ արկերը կարող են ամբարտակի վրա կիտել օրական 150 հազար խորանարդ մետր գրունտ։ Այդ աշխատանքը ձեռքով կատարելու դեպքում կպահանջվեր 30-ից մինչև 50 հազար հողափոր բանվոր։



Հզոր տեխնիկան հիանալի են յուրացրել Վոլգա-Դոն ջրանցքի կառուցողները։ Աշխատանքն այնքան հաջող է ծավալվել, որ կառավարությունը որոշեց 2 տարով կրճատել Վոլգա-Դոն ջրային ճանապարհի կառուցման նախկինում սահմանված ժամկետը։ Արդեն 1952 թվականի գարնանից Ստալինգրադից մինչև Ռոստով ջրային ճանապարհներով կնավարկեն բոլոր հարմարություններով օժտված շոգենավեր։

Վոլգան Դոնի հետ միացնելով կավարտվեն այն հսկայական աշխատանքները, որ կատարվում էին սովետական իշխանության տարիներին՝ Սպիտակ, Բալթիկ ու Կասպից ծովերը Ազովի և Սև ծովերի հետ միացնող նավարկելի ճանապարհների վերակառուցման ու շինարարության ուղղությամբ։

Վոլգա-Դոն ջրանցքի ստեղծումով միաժամանակ լուծվում է Ռոստովի և Ստալինգրադի մարզերի կիսատափաստանային ու չորային շրջանները ոռոգելու և ջրովի դարձնելու խնդիրը։ Դոնի ջրերը կոռոգեն 750 հազար հեկտար և ջրովի կդարձնեն 2 միլիոն հեկտար հող։ Այդ աշխատանքները լրիվին կավարտվեն 1956 թվականին, բայց արդեն 1952 թվականին ջուր կստանա 200 հազար հեկտար հող։

Այդ շինարարության իրագործման հետևանքով կվերափոխվեն արգավանդ, բայց երաշտից խիստ տուժած հողերը։ Կլիման զգալիորեն կխոնավանա և ավելի փափուկ կդառնա։ Ոռոգումը հնարավորություն կտա ոչ միայն հաղթելու երաշտին, այլև մեծ հաջողությամբ այստեղ զարգացնելու այնպիսի նոր կուլտուրաներ, ինչպես բամբակը, բրինձը և այլն։ Ոռոգվող հողերում ցորենի բերքատվությունը կկազմի 35—40 ցենտներ, բրինձինը՝ 40—50 ցենտներ, բամբակինը՝ 20—25 ցենտներ յուրաքանչյուր հեկտարից։ Զգալիորեն կընդարձակվի անասնաբուծության կերի բազան, կավելանա խոշոր եղջերավոր անասունների, խոզերի, ոչխարների, թռչունների գլխաքանակը։

Այստեղ կատարվող շինարարական աշխատանքների մասշտաբի մասին կարելի է դատել հետևյալ տվյալներից։ 101 կիլոմետր երկարությամբ Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքը ունենալու է 13 շլյուզ, երեք ամբարտակ, պոմպային կայաններ և շատ այլ կառուցվածքներ։ Դոնի վրա, Ցիմլյանսկայա ավանի շրջանում, ստեղծվում է հիդրոհանգույց՝ հսկայական ջրամբարով, ամբարտակով, որի երկարությունն անցնելու է 13 կիլոմետրից, հիդրոէլեկտրակայանով, որն ու-



նենալու է 160 հազար կիլովատ կարողություն։ Ցիմլյանսկի հիդրոէլեկտրակայանը էժան էլեկտրոէներգիա է մատակարարելու ոռոգվող հողագործության շրջաններին և արդյունաբերական ձեռնարկություններին։ Այստեղ կառուցվող մագիստրալ և ոռոգիչ ջրանցքների երկարությունը կկազմի 758 կիլոմետր։

Վոլգա-Դոն ջրանցքի շինարարության շատ տեղամասերում սոցիալիստական մրցություն է ծավալվում ընթացիկ տարվա աշխատանքների վիթխարի ծրագիրը ժամկետից շուտ՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 7-ին կատարելու համար։

## ԳԼԽԱՎՈՐ-ԹՈՒՐՔՄԵՆԱԿԱՆ ՋՐԱՆՑՔԸ

Ամու-Դարյան՝ Միջին Ասիայի այդ ամենամեծ գետը, մինչև վերջին ժամանակներս քիչ է օգտագործվել ոռոգման համար։ Գլխավոր-Թուրքմենական ջրանցքը, որ կառուցվում է բնության վերափոխման ստալինյան հանճարեղ պլանի համաձայն, Ամու-Դարյայի ջրերը կհասցնի Արևմտյան Թուրքմենիայի դաշտերին, հնարավորություն կտա ոռոգել և ջրովի դարձնել հսկայական տե-

րիտորիա Թուրքմենստանում և Կարա-Կալպակյան ռեսպուբլիկայում։

Ջրանցքը սկիզբ է առնելու Ամու-Դարյայի ստորին հոսանքի շրջանից՝ Թախիա-Տաշի մոտից, հատելով Կարա-Կումը, անցնելու է 1100 կիլոմետր տարածություն և վերջանալու է Կրասնովոդսկի՝ Կասպից ծովի նավահանգստի մոտ։

Գլխավոր-Թուրքմենական ջրանցքի ջրով Կարա-Կալպակիայում և Թուրքմենստանում կոռոգվի մեկ միլիոն 300 հազար հեկտար հող, որն օգտագործվելու է գլխավորապես բամբակագործության համար։ Կարա-Կալպակիայի և Թուրքմենստանի հողերի ոռոգումը կապահովի բամբակագործության հզոր վերելքն այդ ռեսպուբլիկաներում։ Բամբակի հումքի արտադրությունը Թուրքմենստանում կավելանա 7—8 անգամ։

Զգալիորեն կաճի Թուրքմենստանում պտղի, խաղողի այգիների և բանջարանոցների տարածությունը։ Կստեղծվի ոռոգվող մերձարևադարձային հողագործության օազիս, որտեղ մեծ մասշտաբներով կաճեցվեն ձիթենի, նռենի, արմավենի, թզենի, այդտեղ կպտղաբերի փյունիկյան արմավենին։ Ջրանցքների ափերին, ամբողջ երկարու-



թյամբ, կտնկվեն հսկայական քանակությամբ թթենիներ, որոնք կապահովեն շերամապահության նոր վերելքը։

Չափազանց հարուստ հեռանկարներ են բացվում անասնաբուծության զարգացման համար։ Կարա-Կումայի 7 միլիոն հեկտար արոտավայրեր ջրովի դարձնելը, ինչպես այդ նախատեսված է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ, և Գլխավոր-Թուրքմենական ջրանցքի երկարությամբ ճիշտ ոռոգման հողամասեր կազմակերպելը հնարավորություն կտան մեծ չափով ավելացնելու խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը։ Զգալի չափով կավելանան նաև կարակուլցեղի ոչխարների հոտերը և ձիերի երամակները, որոնցով վաղուց ի վեր հռչակված է Թուրքմենական ռեսպուբլիկան։

Ընդհանուր երկարությամբ հազար կիլոմետր ձգվող ջրախողովակները խմելու առատ ջուր կմատակարարեն Թուրքմենստանի քաղաքներին և արդյունաբերությանը։

Ռեսպուբլիկայի տափաստանների բնության վերափոխման գործում վիթխարի դեր կխաղան դաշտապաշտպան անտառաշերտերը և ավազուտների ամրացումը՝ Գլխավոր-Թուրքմենական ջրանցքի, խոշոր ոռոգիչ ջրանցքների երկարությամբ, նոր ոռոգվող

հողերի սահմաններին, արդյունաբերական ձեռնարկությունների և բնակավայրերի շուրջը։

Ջրանցքի երեք ամբարտակների վրա կկառուցվեն հիդրոէլեկտրակայաններ՝ 100 հազար կիլովատ ընդհանուր կարողությամբ։ Այդ էլեկտրակայանները հնարավորություն կտան էլեկտրիֆիկացնել ռեսպուբլիկայի շատ շրջաններ, էլեկտրականությունն օգտագործել բամբակի դաշտերում, գործի գցել արդյունաբերական նոր ձեռնարկություններ։

Գլխավոր-Թուրքմենական ջրանցքը ոռոգման, էներգետիկայի և ջրամատակարարման պրոբլեմների հետ միասին կլուծի նաև տրանսպորտի պրոբլեմը։ Ջրանցքը նավարկելի կլինի իր ամբողջ երկարությամբ։ Նա Ամու-Դարյայի ստորին հոսանքի շրջանները կկապի Կասպից ծովի հետ, իսկ Վոլգայի և Վոլգա-Դոն ջրանցքի միջոցով՝ նաև Սև, Բալթիկ և Սպիտակ ծովերի հետ։

## ՈՒԿՐԱԻՆԱՅԻ ՀԱՐԱՎՈՒՄ ԵՎ ՂՐԻՄՈՒՄ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ Դնեպրի վրա, Կախովկայի մոտ, կառուցվելու է մի նոր հիդրոէլեկտրակայան՝ 250 հազար կիլովատ կարողությամբ, որը տարեկան տալու է մեկ միլիարդ 200 միլիոն կիլովատ-



ժամ էլեկտրաէներգիա։ Կախովկայի էլեկտրակայանը և Հարավ-Ուկրաինական ու Հյուսիս-Ղրիմյան ջրանցքները ջուր կտան Ուկրաինական ՍՍՌ Խերսոնի, Զապորոժյեյի, Նիկոլայևի և Դնեպրոպետրովսկի մարզերի, ինչպես նաև Ռուսաստանյան Ֆեդերացիայի Ղրիմի մարզի չորային շրջաններին։

Այդ վիթխարի իռիգացիոն սիստեմը հնարավորություն կտա ոռոգել և ջրովի դարձնել 3,2 միլիոն հեկտար հողային տարածություն։ Այս մեծ շինարարության բոլոր աշխատանքները, կառավարության որոշման համաձայն, պետք է ավարտվեն 1957 թվականին։

Հարավ-Ուկրաինական ջրանցքը սկիզբ է առնելու Զապորոժյե քաղաքի մոտ, Դնեպր գետից։ Այդ ջրանցքը Դնեպրի ջրերը տանելու-միացնելու է Մոլոչնայա գետին և ապա Ասկանիա-Նովա արգելավայրի ուղղությամբ՝ մինչև Սիվաշը։ Հարավ-Ուկրաինական ջրանցքի շարունակությունը կլինի Հյուսիս-Ղրիմյան ջրանցքը, որը կսկսվի Սիվաշի մոտից և Ջանկոյի վրայով Ղրիմի տափաստանային շրջանների վրայով հասնելու է մինչև Կերչ։ Մեկ միասնական ջրային մագիստրալ կազմող այդ երկու ջրանցքների ընդհանուր

երկարությունը հավասար կլինի 550 կիլոմետրի։

Կկառուցվի երկու ամբարտակ, որոնք կստեղծեն վիթխարի ծավալ ունեցող ջրամբարներ, որոնցից մեկը 14 միլիարդ խորանարդ մետր տարողությամբ՝ Դնեպրի վրա, Կախովկա քաղաքի մոտ, իսկ մյուսը՝ 6 միլիարդ խորանարդ մետր տարողությամբ՝ Մոլոչնայա գետի վրա։ Բացի դրանից, ջրանցքի երկարությամբ կստեղծվեն մի քանի փոքր ջրամբարներ՝ ոչ պակաս, քան մեկ միլիարդ խորանարդ մետր ընդհանուր տարողությամբ։

Մեծ է Ուկրաինայի Հարավում և Հյուսիսային Ղրիմում կատարվող կառուցումների ժողովրդատնտեսական նշանակությունը։ Դնեպրի ջրերով կոռոգվեն այն արգավանդ հողերը, որոնք յուրաքանչյուր երեք-չորս տարին մեկ անգամ երաշտի էին ենթարկվում։ Ջրանցքի կառուցումից հետո այստեղ կոլխոզները և սովխոզները կստանան ցորենի, խաղողի, բամբակի և պարենային ու տեխնիկական այլ կուլտուրաների առատ և կայուն բերք։ Ոռոգումը հաստատուն բազա կստեղծի այս վայրերում հանրային մթերատու անասնաբուծություն զարգացնելու հա-



մար։ Խոշոր չափով կավելանա անասունների և մանավանդ նրբագեղմ ոչխարների գլխաքանակը։

Կախովկայի հիդրոէլեկտրակայանը, ինչպես նաև Մոլոչնայա գետի վրա կառուցվող 10 հազար կիլովատ կարողությամբ հիդրոէլեկտրակայանը, հնարավորություն կտան էլ ավելի բարձրացնել գյուղատնտեսության մեքենայացման մակարդակը Ուկրաինայի հարավում և Ղրիմի հյուսիսային շրջաններում։ Այդ էլեկտրակայանների էներգիան հնարավորություն կտա ավելի լայն մասշտաբներով հերկ կատարելու էլեկտրաքարշ տրակտորներով։ Էլեկտրականությունը լայնորեն օգտագործվելու է նաև հացահատիկի կալսման, կերի մշակման և այլ աշխատանքներում։

Ջրանցքների ափերին և ջրամբարների գոտում կստեղծվեն դաշտապաշտպան անտառաշերտեր, որոնք կբարելավեն Ուկրաինայի հարավի և Ղրիմի հյուսիսային շրջանների կլիման։

Պրոֆ. Վ. ԿՈՎԴԱ



# ՊԱՏԵՐԱԶՄԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՈՆՈՊՈԼԻԱՆԵՐԻ ՇԱՀՈՒՅԹԻ ԱՂԲՅՈՒՐ Է

*Խաղաղության ու ժողովուրդների ոխերիմ թշնամիները՝ մոնոպոլիստները մարդկության պատմության մեջ երկու անգամ հրահրեցին համաշխարհային պատերազմներ։ Դեռևս չէին դադարել երկրորդ համաշխարհային պատերազմի վերջին կրակոցները, երբ ԱՄՆ-ի և Անգլիայի մոնոպոլիստական շըրջանները կանգնեցին նոր՝ երրորդ համաշխարհային պատերազմի ուղու վրա։*

*Ձգտելով հաստատել համաշխարհային տիրապետություն, ամերիկյան մոնոպոլիստները իրականացնում են սպառազինությունների կատաղի մրցավազք, իրենց բյուջեների մեծ մասը հատկացնում են ռազմական նըպատակների համար, ստեղծում են ռազմական բազաների լայն ցանց, կազմակերպում են ռազմական ագրեսիվ միություններ ու բլոկներ։ Նրանք ավազակային նոր պատերազմի են պատրաստվում Սովետական*



*Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։*

*1950 թվականի հունիսին ԱՄՆ-ի կառավարությունը սկսեց բարբարոսական, զավթողական պատերազմ կորեական ժողովրդի դեմ։ Տրումենի ռեակցիոն կառավարությունը սկսեց իր բացարձակ ագրեսիան ոչ միայն Կորեական Ժողովրդա-դեմոկրատական Ռեսպուբլիկայի, այլև Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Վյետնամի, Ֆիլիպինների ու Ասիայի մյուս ժողովուրդների դեմ։*

*Ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության կուրսը որոշում են ԱՄՆ-ի մոնոպոլիստները՝ նոր պատերազմի հրձիգները։ Մոնոպոլիստները օգտագործում են սպառազինությունների մրցավազքը և պատերազմները՝ հսկայական շահույթներ ստանալու, բանվորների շահագործումը ուժեղացնելու, գյուղացիներին ու արհեստավորներին աղքատացնելու, ժողովուրդներին իրենց ստրուկներ դարձնելու համար։ Ընկեր Ի. Վ. Ստալինը «Պրավդա»-ի թղթակցի հարցերին տված պատասխաններում նշեց, որ «...Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Անգլիայում, ինչպես և Ֆրանսիայում կան ագրեսիվ ուժեր, որոնք ծարավի են նոր պատերազմի։ Պատերազմը*

նրանց հարկավոր է գերշահույթներ ստանալու համար, ուրիշ երկրներին կողոպտելու համար։ Այդ միլիարդատերերն ու միլիոնատերերն են, որոնք պատերազմը դիտում են որպես վիթխարի շահույթներ տվող եկամտաբեր հոդված»։

Ամերիկյան մոնոպոլիստները հսկայական շահույթներ ստացան երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին։ 1944 թվականին մոնոպոլիաներն ստացան 4 անգամ ավելի շահույթ, քան 1939 թվականին և 10 անգամ ավելի, քան 1938 թվականին։

Խոշորագույն մոնոպոլիաների տնտեսական հզորությունն ամրապնդվում էր ի հաշիվ աշխատավորների աղքատացման՝ ԱՄՆ-ի կառավարության հարկային քաղաքականության շնորհիվ։ Հարկային ճնշման ուժեղացման հետևանքով միայն 1944 թվականին ամերիկյան բանվորների և ծառայողների աշխատավարձը կրճատվեց 7,8 միլիարդ դոլարով, իսկ 1945 թվականին՝ 10,3 միլիարդ դոլարով։

Իմպերիալիզմի էպոխայում մոնոպոլիաները իրենց ձեռքումն են պահում պետական ապարատը և նրա գործունեությունը հարմարեցնում իրենց շահերին։ Ամերիկյան հրապարակախոս Լանդբերգը գրում է, որ



այժմ Միացյալ Նահանգներին տիրում և ղեկավարում է 60 խոշորագույն ընտանիքից բաղկացած մի խումբ, որից հետո անմիջապես գալիս են ավելի քիչ հարստություն ունեցող 90 ընտանիքներ։ Այդ ընտանիքները հանդիսանում են ժամանակակից արդյունաբերական օլիգարխիայի կենսական կենտրոնը, որը տիրապետում է Միացյալ Նահանգներին, գործում է կառավարությանը կից, հանդիսանում է ԱՄՆ-ի ոչ պաշտոնական, անտեսանելի, ստվերում թաքնված, բայց իսկական կառավարությունը։ Դա դրամի կառավարությունն է։

Ինչպես պատերազմի տարիներին, այնպես էլ այժմ ամերիկյան մոնոպոլիաների կառավարողները իրենց ագենտներին տեղավորում են ԱՄՆ-ի պետական ապարատում և առանձնապես ռազմական պատվերներով զբաղվող օրգաններում։ Այսպես, ԱՄՆ-ի պետական քարտուղար Աչեսոնը երկար ժամանակ վարում էր երկրորդական պաշտոններ և նա այժմյան կարևոր պոստը (ԱՄՆ-ի պետական քարտուղար) գրավեց Աչեսոնի իրավաբանական ֆիրմայի միջամտությամբ։ Գեներալ Էյզենհաուերը նշանակվեց ագրեսիվ Հյուսիսատլանտյան պակտի ռազմական ղեկավարի պոստում Ռոկֆելլերի օգնությամբ։ Այսպի-

տով, ղեկավար պոստեր գրավելով ամերիկյան էկոնոմիկայում, ֆինանսական օլիգարխիան որոշում է նաև ԱՄՆ-ի կառավարության ագրեսիայի ու պատերազմի քաղաքականությունը։

Ուոլլ-ստրիտի պատվերով է, որ ԱՄՆ-ը թևակոխել է երկրի ֆաշիզացման ու ռազմական ավանտյուրաների ուղին։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում սպառազինությունների մրցավազքը և նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստման քաղաքականությունը գերշահույթներ են տալիս ամերիկյան մոնոպոլիստներին։ Առանձնապես խոշոր չափով են աճում ռազմական պատվերներ կատարող մոնոպոլիաների շահույթները։ Այսպես, Յունայթեդ Ստեյտս ստիլ կորպորեյշնի ստացած շահույթը 1949 թվականին 28 տոկոսով ավելի էր, քան 1948 թվին և 162 տոկոսով ավելի, քան 1943 թվականին։ 1949 թվականին Դյուպոն դե Նեմուրի ստացած շահույթը, համեմատած 1948 թվին ստացած շահույթի հետ, աճեց 36 տոկոսով, իսկ 1943 թվականի համեմատությամբ՝ 300 տոկոսով։

Կորեայում ծավալված ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիան բավականին մեծաց-



րեց ամերիկյան մոնոպոլիաների շահույթները։ Ագրեսիայի առաջին երեք ամիսներում ամերիկյան կորպորացիաների շահույթները, համեմատած 1949 թվի երրորդ եռամսյակի հետ, աճեցին 54 տոկոսով։ 1950 թվի 3-րդ եռամսյակում ԱՄՆ-ի 500 կորպորացիաների շահույթները կազմեցին 1560 միլիոն դոլլար՝ 1949 թվի համապատասխան ժամանակամիջոցում ստացված 1010 միլիոն դոլլար շահույթի դիմաց։ Կորեայում սկսած ագրեսիան մի կողմից մեծացնում է ամերիկյան իմպերիալիստների կուտակած կապիտալը, իսկ մյուս կողմից ծանր է անդրադառնում ԱՄՆ-ի աշխատավորների կենսամակարդակի վրա։ Ամերիկյան ագրեսիան Կորեայում նոր թափ հաղորդեց գների բարձրացմանը։ ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրության նվազեցրած տվյալներով, լայն սպառման ապրանքների գները 1950 թ. սեպտեմբերի կեսին, 1946 թ. համեմատությամբ, բարձրացել են 30 տոկոսով։ Երկրում մեծ ծավալ է ստացել դրամի արժեքազրկումը։

Ինչպես հայտնի է, 1950 թ. դեկտեմբերին

Տրումենը հայտարարեց, որ ԱՄՆ-ում «արտակարգ դրություն» է մտցվում։ Դրանով Տրումենի կառավարությունը մտադիր է նորից ավելացնելու զինված ուժերի թիվը, եւ ավելի ընդարձակելու սպառազինությունների արտադրությունը։ ԱՄՆ-ում «արտակարգ դրություն» մտցնելը ցույց է տալիս, որ ամերիկյան կառավարող կլիկը, չնայած իր քաղաքականության ճգնաժամին ու Կորեայում կրած խայտառակ պարտությանը, մտադիր է ավելի ընդարձակել իր ագրեսիայի մասշտաբները։ ԱՄՆ-ում «արտակարգ դրություն» մտցնելը նպատակ ունի՝ զենքի արտադրությամբ ապահովել մոնոպոլիստների համար միլիարդային շահույթներ, ոչնչացնել ամերիկյան ժողովրդի դեմոկրատական իրավունքների վերջին մնացորդները և անխնա շահագործել բանվոր դասակարգին, ավելի մեծ չափով նախապատրաստվել նոր համաշխարհային պատերազմի համար։

Ամերիկյան մոնոպոլիստների կողմից նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստման կուրսը իր արտահայտությունն է գտնում ԱՄՆ-ի պետական բյուջեում։ ԱՄՆ-ի պետական բյուջեն պատերազմի բյուջե է։ ԱՄՆ-ի կառավարության ռազմական ծախ-



սերի ընդհանուր գումարը 1950—1951 թ. թ. բյուջետային տարում կազմում է 67,8 միլիարդ դոլլար։ 1951—1952 թ. թ. ռազմական ծախսերի նախանշված չափը 1938—1939 թ. թ. ռազմական ծախսերը կգերազանցի 50 անգամ։ Բավական է նշել, որ երկրորդ համաշխարհային պատերազմի նախապատրաստման ամենալարված ժամանակ՝ 1938—1939 թ. թ. բյուջետային տարում, երբ ֆաշիստական ագրեսիվ պետությունների՝ Գերմանիայի, Իտալիայի և Ճապոնիայի ռազմական ծախսերը միասին վերցրած կազմում էին մոտ 10 միլարդ դոլլար։

Այն ժամանակ, երբ սպառազինությունների ավելացման համար ԱՄՆ-ը ծախսում է շատ տասնյակ միլիարդ դոլլար, ժողովրդի կրթության, առողջապահության, բնակարանային ու կոմունալ շինարարության վրա ծախսվում է նրա ընդհանուր բյուջեի 2 տոկոսը միայն։ Հայտնի է, որ ԱՄՆ-ում 8 միլիոն մարդ, կամ ամբողջ բնակչության յուրաքանչյուր 17-րդ մարդը, տառապում է որևէ հոգեկան հիվանդությամբ։ Երկրում հաշվվում է մոտ 10 միլիոն անգրագետ և կիսագրագետ։ Բժշկական օգնությունից զրկված է բնակ-

չության 4/5-ը, 15 միլիոն մարդ խղճուկ կյանք է վարում նկուղներում։ Գործազուրկների և կիսագործազուրկների թիվը ԱՄՆ-ում հասնում է 18 միլիոն մարդու։

Այսպիսով, տնտեսական ու քաղաքական ճգնաժամից դուրս գալու համար, ամերիկյան մոնոպոլիստները վարում են ռեակցիոն քաղաքականություն երկրի ներսում և ռազմական ավանտյուրաներ են ծավալում աշխարհի մի շարք մասերում։ Պայքար ծավալելով համաշխարհային շուկաների համար, ամերիկյան մոնոպոլիստներն իրենց հայացքներն ուղղում են դեպի պատերազմ։ Նրանք պատերազմը դիտում են որպես միջոց խճճված հակասություններից ու ներքին դժվարություններից դուրս գալու համար։ Նրանք երազում են «համաշխարհային տիրապետության» հասնելու մասին։

Սակայն Ամերիկյան իմպերիալիստները իրենց պլանները կառուցում են առանց աշխարհի ժողովուրդների կարծիքը հաշվի առնելու։ Ժողովուրդները պատերազմ չեն ուզում։ Ժամանակակից պատմական զարգացման փաստերն ասում են, որ խաղաղությունը կհաղթի պատերազմին։

Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆ



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել*

1. *Ն. ՉԵՐԵՄՆԻԽ, Ի. ՇԻՊԻԼՈՎ.*— Ա. Ֆ. Մոժայսկի։ *118 էջ, գինը 2 ռ.։*

2. *Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ.*— Հայկ. ՍՍՌ-ում տարածված աշնանացան և գարնանացան ցորենի հիմնական սորտերը և նրանց մշակությունը։ *42 էջ, գինը 80 կոպ.։*

*Հ. Կ. ՄԱՂԱՔՅԱՆ.*— Սուդանի խոտը և նրա մշակությունը։ *30 էջ, գինը 55 կոպ.։*

*Զ. Ք. ԴԻԼԱՆՅԱՆ.*— Թրու կարճամբերքներ։ *42 էջ, գինը 75 կոպ.։*

*Կ. Ա. ԳԼԱԴԿՈՎ.*— Հեռուստատեսություն։ *84 էջ, գինը 1 ռ. 25 կոպ.։*

*Զ. Պ. ՑԻՐՍՈՎ.*— Լողը ՊՍՊ կոմպլեքսում։ *71 էջ, գինը 1 ռ. 35 կոպ.։*

*Գ. Խ. ԱՂԱՋԱՆՅԱՆ.*— Խոզանացան կերի կուլտուրաները և նրանց մշակումը Հայկական ՍՍՌ-ում։ *37 էջ, գինը 1 ռ. 25 կոպ.։*



Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
**БЛОКНОТ АГИТАТОРА**
№ 10 1951 г.

ՎՖ 02417, Պատվեր № 485 Տիրաժ 9.700

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան։
Երևան